# ԳԻՐՔ ԾՆՆԴՈՑ

### ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹԵԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ

1 *Սկիզբէն Աստուած երկինքն*
*ու երկիրը ստեղծեց ։* 2 *Երկիրը*
*անձեւ ու պարապ էր եւ անդուն-*
*դին վրայ խաւար կար եւ Աստու-*
*ծոյ Հոգին ջուրերուն վրայ կը շար-*
*ժէր ։* 3 *Աստուած ըսաւ. «Լոյս ըլ-*
*լայ» ու լոյս եղաւ ։* 4 *Աստուած տե-*
*սաւ որ լոյսը բարի է ու Աստուած*
*լոյսը խաւարէն զատեց ։* 5 *Աստուած*
*լոյսին անունը Ցորեկ եւ խաւարին*
*անունը Գիշեր դրաւ ։ Իրիկուն ու*
*առտու ըլլալով՝ առաջին օրը եղաւ ։*
6 *Եւ Աստուած ըսաւ. «Ջուրերուն*
*մէջտեղը հաստատութիւն ըլլայ եւ*
*ջուրերը ջուրերէն զատէ» ։* 7 *Աստ-*
*ուած հաստատութիւնը ըրաւ ու*
*հաստատութեանը տակ եղած ջու-*
*րերը հաստատութեանը վրայ եղած*
*ջուրերէն զատեց ու այնպէս եղաւ ։*
8 *Աստուած հաստատութիւնը Եր-*
*կինք կոչեց եւ իրիկուն ու առտու*
*ըլլալով՝ երկրորդ օրը եղաւ ։*
9 *Աստուած ըսաւ. «Երկնքի տակ*
*եղած ջուրերը մէկտեղ թող հա-*
*ւաքուին ու ցամաքը երեւնայ» եւ*
*այնպէս եղաւ ։* 10 *Աստուած ցամա-*
*քին անունը Երկիր դրաւ ու հաւաք-*
*ուած ջուրերը Ծով կոչեց ։ Աստ-*
*ուած տեսաւ որ բարի են ։* 11 *Աստ-*
*ուած ըսաւ. «Երկիրը կանանչ խոտ*
*թող բուսցնէ, սերմ տուող խոտ եւ*
*իր տեսակին պէս պտուղ տուող*
*պտղաբեր ծառ, որ իր մէջ իր սեր-*
*մը ունենայ երկրի վրայ» ու այն-*
*պէս եղաւ ։* 12 *Ու երկիրը կանանչ*
*խոտ, իր տեսակին պէս սերմ տը-*
*ւող խոտ եւ իր տեսակին պէս սերմ*
*ունեցող պտղաբեր ծառ հանեց ։*
13 *Աստուած տեսաւ որ բարի են ։*
*Եւ իրիկուն ու առտու ըլլալով՝ եր-*
*րորդ օրը եղաւ ։*
14 *Աստուած ըսաւ. «Երկնքի հաս-*
*տատութեանը մէջ լուսաւորներ*
*թող ըլլան, որպէս զի ցորեկը գի-*
*շերէն զատեն եւ նշաններու ու ա-*
*տեններու եւ օրերու ու տարիներու*
*համար ըլլան ։* 15 *Ու երկնքի հաս-*
*տատութեանը մէջ լուսաւորելու*
*համար ըլլան, որպէս զի երկրի վը-*
*րայ լոյս տան» Ու այնպէս եղաւ ։*
16 *Եւ Աստուած երկու մեծ լուսա-*
*ւորներ ըրաւ ։ Մեծ լուսաւորը ցո-*
*րեկուան իշխելու համար ու պզտիկ*
*լուսաւորը գիշերուան իշխելու հա-*
*մար ։ Աստղերն ալ* ըրաւ ։ 17 *Եւ*
*Աստուած երկնքի հաստատութեա-*
*նը մէջ դրաւ զանոնք, որպէս զի*
*երկրի վրայ լոյս տան* 18 *Եւ ցորեկ-*
*ուան ու գիշերուան իշխեն եւ լոյսը*
*խաւարէն զատեն ։ Աստուած տե-*
*սաւ, որ բարի են ։* 19 *Եւ իրիկուն*
*ու առտու ըլլալով՝ չորրորդ օրը*
*եղաւ ։*
20 *Աստուած ըսաւ. «Ջուրերը*
*կենդանութեան շունչ ունեցող շատ*
*սողուններ թող հանեն եւ թռչուն-*
*ները երկրի վրայ, երկնքի հաս-*
*տատութեանը երեսը թող թռչին» ։*
21 *Աստուած ստեղծեց մեծամեծ*
*կէտերը եւ ամէն սողացող շնչաւոր*

կենդանի, որոնք ջուրերը առատ
հանեցին իրենց տեսակին պէս ու
ամէն թեւաւոր թռչուն՝ իր տեսա-
կին պէս։ Աստուած տեսաւ որ բա-
րի են։ 22 Աստուած օրհնեց զանոնք՝
ըսելով. «Աճեցէք ու շատցէք եւ
ծովերուն մէջ եղած ջուրերը լե-
ցուցէք. թռչուններն ալ երկրի վը-
րայ թող շատնան»։ 23 Եւ իրիկուն
ու առտու ըլլալով՝ հինգերորդ օ-
րը եղաւ։
24 Աստուած ըսաւ. «Երկիրը թող
հանէ շնչաւոր կենդանի՝ իր տեսա-
կին պէս՝ անասուններ, սողուն-
ներ ու երկրի գազաններ՝ իրենց
տեսակին պէս»։ Եւ այնպէս եղաւ։
25 Աստուած երկրի գազանները ի-
րենց տեսակին պէս եւ ընտանի ա-
նասունները իրենց տեսակին պէս
ու գետնի բոլոր սողունները իրենց
տեսակին պէս ըրաւ։ Աստուած տե-
սաւ, որ բարի են։
26 Աստուած ըսաւ. «Մեր պատ-
կերին ու նմանութեանը պէս մարդ
ընենք։ Ան ծովու ձուկերուն ու եր-
կինքի թռչուններուն եւ անասուն-
ներուն ու բոլոր երկրի ու սողա-
ցող բոլոր սողուններուն վրայ թող
իշխէ»։ 27 Աստուած՝ իր պատ-
կերովը ստեղծեց մարդը. Աստու-
ծոյ պատկերովը ստեղծեց զանի-
կա, արու եւ էգ ստեղծեց զանոնք։
28 Աստուած օրհնեց զանոնք եւ
Աստուած անոնց ըսաւ. «Աճեցէք ու
շատցէք ու երկիրը լեցուցէք եւ ա-
նոր տիրեցէք ու ծովու ձուկերուն
ու երկինքի թռչուններուն եւ երկրի
վրայ սողացող բոլոր կենդանինե-
րուն իշխեցէք»։
29 Աստուած ըսաւ. «Ահա ձեզի
տուի բոլոր երկրի վրայ եղած ա-
մէն սերմ ունեցող խոտ ու ամէն
ծառ, որուն մէջ սերմ տուող ծառի
պտուղ կայ։ Ասոնք ձեզի կերակուր
պիտի ըլլան։ 30 Ու երկրի բոլոր
գազաններուն ու երկինքի բոլոր
թռչուններուն եւ երկրի վրայ կեն-
դանութեան շունչ ունեցող բոլոր
սողուններուն՝ կերակուրի համար
կանաչ խոտ տուի»։ Ու այնպէս ե-
ղաւ։
31 Եւ Աստուած իր բոլոր ըրածը
տեսաւ։ Ահա շատ բարի էր։ Եւ ի-
րիկուն ու առտու ըլլալով՝ վեցե-
րորդ օրը եղաւ։

### ԵԴԵՄԻ ՊԱՐՏԷԶԸ

2 Ամբողջացան երկինք ու եր-
կիր եւ անոնց բոլոր *զարդե-
րը։ 2 Եւ Աստուած իր բոլոր գործե-
րը եօթներորդ օրը լմնցուց ու եօթ-
ներորդ օրը հանգստացաւ իր բոլոր
գործերէն։ 3 Եւ Աստուած եօթնե-
րորդ օրը օրհնեց ու սրբեց զանի-
կա. վասն զի անոր մէջ հանգստա-
ցաւ իր բոլոր գործերէն՝ որոնք ըս-
տեղծագործութեան մէջ կատարած
էր։
4 Ասոնք են երկինքի ու երկրի ծը-
նունդները՝ անոնց ստեղծուած ա-
տենը։
5 Երբ Տէր Աստուած երկիրն ու
երկինքը ըրաւ, դեռ դաշտին բոլոր
բոյսերը՝ երկրի վրայ չեղած եւ
դաշտին բոլոր խոտը՝ դեռ չբու-
սած. քանզի Տէր Աստուած երկրի
վրայ տակաւին անձրեւ բերած չէր
ու գետինը մշակող մարդ չկար,
6 Հապա երկրէն շոգի կ'ելլէր ու
գետնին բոլոր երեսը կը ջրէր։ 7 Տէր
Աստուած գետնին հողէն շինեց
մարդը եւ անոր ռնգունքներէն կեն-
դանութեան շունչ փչեց ու մարդը
կենդանի հոգի եղաւ։
8 Եւ Տէր Աստուած արեւելեան
կողմը՝ Եդեմի մէջ՝ պարտէզ մը տըն-
կեց ու իր շինած մարդը հոն դրաւ։
9 Եւ Տէր Աստուած գետնէն՝ տես-
նելու հաճելի եւ ուտելու աղէկ ա-
մէն ծառ ու պարտէզին մէջտեղը
կենաց ծառը եւ բարին ու չարը
գիտնալու ծառն ալ բուսցուց։ 10 Եւ
պարտէզը ջրելու համար Եդեմէն
գետ մը կ'ելլէր ու անկէ չորս ճիւ-

* Եբր., զօրքը։

ղի կը բաժնուէր : 11 Մէկուն անու-
նը Փիսոն է . ասիկա Եւիլայի բոլոր
երկիրը կը պտըտի , ուր ոսկի կայ
12 Եւ այն երկրին ոսկին ազնիւ է .
սուտակ ու եղնգնաքար կայ հոն :
13 Ու երկրորդ գետին անունը Գե-
հոն է . ասիկա Քուշի բոլոր երկիրը
կը պտըտի : 14 Ու երրորդ գետին
անունը Տիգրիս է . ասիկա Ասորես-
տանի արեւելեան կողմը կ՚երթայ :
15 Եւ չորրորդ գետը Եփրատ է : Եւ
Տէր Աստուած առաւ մարդը ու Ե-
դեմի պարտէզին մէջ դրաւ , որպէս
զի զանիկա մշակէ ու պահէ : 16 Եւ
Տէր Աստուած պատուիրեց մար-
դուն՝ ըսելով . «Պարտէզին բոլոր
ծառերէն համարձակ կեր . 17 Բայց
բարիի ու չարի գիտութեան ծառէն
մի՛ ուտեր . քանզի այն օրը որ ան-
կէ ուտես , անշուշտ պիտի մեռ-
նիս» :
18 Տէր Աստուած ըսաւ . «Աղէկ չէ
որ Ադամ մինակ ըլլայ . անոր օգ-
նական մը ընեմ իրեն յարմար»
19 Եւ Տէր Աստուած դաշտին բոլոր
գազաններն ու երկնքի բոլոր թռ-
չունները հողէն շինեց եւ Ադամին
առջեւ բերաւ , որպէս զի տեսնէ թէ
անոնց ի՛նչ անուն պիտի դնէ : Ա-
դամ ի՛նչ անուն , որ դրաւ շնչաւոր
կենդանիի , այն եղաւ անոր անու-
նը : 20 Ադամ բոլոր անասուններուն
ու երկնքի թռչուններուն եւ դաշտի
բոլոր գազաններուն անուններ դը-
րաւ , բայց Ադամին յարմար օգնա-
կան մը չգտնուեցաւ : 21 Եւ Տէր
Աստուած խորունկ քուն մը բերաւ
Ադամին վրայ ու անիկա քնացաւ :
Անոր կողին ոսկորներէն մէկը ա-
ռաւ ու անոր տեղը միս լեցուց :
22 Տէր Աստուած Ադամէն առած
կողին ոսկորը կին շինեց ու զանի-
կա Ադամին բերաւ : 23 Ադամ ըսաւ .
«Հիմա ասիկա ոսկորէս ոսկոր ու
մարմինէս մարմին է . ասիկա Կին
կոչուի , քանզի իր այրէն առնուե-
ցաւ» : 24 Անոր համար այրը պիտի
ձգէ իր հայրը ու իր մայրը եւ իր
կնոջ պիտի յարի ու մէկ մարմին
պիտի ըլլան : 25 Եւ Ադամ ու իր կի-
նը՝ երկուքն ալ մերկ էին ու չէին
ամչնար :

ՄԱՐԴՈՒՆ ԱՆՀՆԱԶԱՆԴՈՒԹԻՒՆԸ

3 Եւ Տէր Աստուծոյ ըրած դաշ-
տի բոլոր գազաններէն աւելի
խորամանկ էր օձը , որ կնոջ ըսաւ .
«Իրա՞ւ Աստուած ըսաւ թէ ‘Պար-
տէզին ոեւէ ծառէն պիտի չուտէք’» :
2 Կինը օձին ըսաւ . «Պարտէզին ծա-
ռերուն պտուղէն կրնանք ուտել ,
3 Բայց պարտէզին մէջտեղը եղած
ծառին պտուղին համար՝ Աստուած
ըսաւ . ‘Անկէ մի՛ ուտէք եւ անոր
մի՛ դպչիք , որպէս զի չմեռնիք’» :
4 Օձը կնոջ ըսաւ . «Ո՛չ թէ անշուշտ
պիտի մեռնիք . 5 Քանզի Աստուած
գիտէ թէ այն օրը որ անկէ ուտէք ,
աչքերնիդ պիտի բացուին եւ աստ-
ուածներու պէս պիտի ըլլաք՝ բա-
րին ու չարը գիտնալով» :
6 Կինը տեսնելով որ ծառը աղէկ
էր կերակուրի համար եւ հաճելի՝
աչքերուն ու փափաքելի *իմաս-
տուն ընելու համար , առաւ անոր
պտուղէն ու կերաւ եւ իր էրկանն
ալ տուաւ եւ անիկա ալ կերաւ 7 Ու
անոնց երկուքին աչքերը բացուե-
ցան ու մերկ ըլլալնին գիտցան եւ
թզենիի տերեւներ կարեցին ու ի-
րենց ծածկոցներ ըրին : 8 Օրուան
զով ատենը պարտէզին մէջ պտը-
տող Տէր Աստուծոյ ձայնը լսելով՝
Ադամ ու իր կինը Տէր Աստուծոյ
երեսէն պարտէզին ծառերուն մէջ
պահուեցան : 9 Տէր Աստուած Ա-
դամը կանչեց ու ըսաւ անոր . «Ո՞ւր
ես» : 10 Եւ անիկա ըսաւ . «Պարտէ-
զին մէջ քու ձայնդ լսեցի ու վախ-
ցայ , վասն զի մերկ էի ու պահուե-
ցայ» : 11 Եւ Աստուած ըսաւ . «Ո՞վ
յայտնեց քեզի քու մերկ ըլլալդ .
արդեօք կերա՞ր այն ծառէն՝ որուն
համար քեզի պատուիրեցի , որ ան-
կէ չուտես» : 12 Ադամ ըսաւ . «Այն

* Կամ, տեսնելու

կինը, որ ինծի հետ ըլլալու տուիր,
ա՛ն ինծի տուաւ ծառէն ու ես կե-
րայ»։ 13 Տէր Աստուած ըսաւ կը-
նոջ «Ի՞նչ է այս քու ըրածդ»։ Կինը
ըսաւ. «Օձը զիս խաբեց ու ես կե-
րայ»։

### ԱՍՏՈՒԾՈՅ ԴԱՏԱՍՏԱՆԸ

14 Եւ Տէր Աստուած օձին ըսաւ.
«Աս ընելուդ համար՝ բոլոր անա-
սուններէն եւ դաշտին բոլոր գա-
զաններէն անիծեալ ըլլաս, փորիդ
վրայ քալես ու կեանքիդ բոլոր օ-
րերը հող ուտես։ 15 Քու ու կնոջ
մէջտեղ, քու սերունդիդ ու անոր
սերունդին մէջտեղ թշնամութիւն
պիտի դնեմ։ Ան քու գլուխդ պիտի
†ջախջախէ եւ դուն անոր գարշա-
պարը պիտի ‡խայթես»։ 16 Եւ կը-
նոջ ըսաւ. «Քու յղութեանդ ցաւե-
րը խիստ պիտի շատցնեմ։ Ցաւով
զաւակ ծնանիս ու ||էրկանդ հնա-
զանդ ըլլաս ու անիկա քու վրադ
իշխէ»։ 17 Եւ Ադամին ըսաւ. «Ո-
րովհետեւ դուն քու կնոջդ խօսքը
մտիկ ըրիր եւ այն ծառէն կերար,
որուն համար պատուիրեցի քեզի՝
ըսելով՝ 'Չուտես անկէ', երկիրը
քու պատճառաւդ անիծեա՛լ ըլլայ,
կեանքիդ բոլոր օրերուն մէջ նե-
ղութիւնով ուտես անկէ 18 Եւ փուշ
ու տատասկ բուսցնէ քեզի եւ դաշ-
տին խոտը ուտես։ 19 Երեսիդ քըր-
տինքովը ուտես քու հացդ, մինչեւ
գետինը դառնալդ, ուրկէ առնուե-
ցար. քանզի հող էիր դուն ու հողի
պիտի դառնաս»։

20 Ադամ իր կնոջ անունը §Եւա
դրաւ. վասն զի ամէն կենդանու-
թիւն ունեցողներուն մայրը անիկա
էր։ 21 Եւ Տէր Աստուած Ադամին
ու անոր կնոջ կաշիէ հանդերձներ
շինեց ու անոնց հագցուց։

### ԱԴԱՄ ԵՒ ԵՒԱ ԴՐԱԽՏԷՆ ԿԸ ՎՌՆՏՈՒԻՆ

22 Եւ Տէր Աստուած ըսաւ. «Ահա
Ադամ մեզմէ մէկուն պէս եղաւ՝
բարին ու չարը գիտնալով եւ հիմա
պէտք չթուլատրեմ որ ձեռքը եր-
կըցնէ ու կենաց ծառէն ալ առնէ
եւ ուտէ ու յաւիտեան ապրի»
23 Ուստի Տէր Աստուած Եդեմի
պարտէզէն դուրս ըրաւ զանիկա,
որպէս զի երկիրը մշակէ, ուրկէ
առնուեցաւ։ 24 Այսպէս վռնտեց
Ադամը ու Եդեմի պարտէզին արե-
ւելեան կողմէն քերովբէներ ու ա-
մէն կողմ դարձող բոցեղէն սուրը
դրաւ, կենաց ծառին ճամբան պա-
հելու համար։

---

† Եբր., զարնէ
‡ Եբր., զարնես
|| Եբր., փափաքդ էրկանդ ըլլայ
§ Այսինքն, կեանք

# ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

## ԳԻՐՔ

# ՀԻՆ ԵՒ ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆՆԵՐՈՒ

**WESTERN ARMENIAN BIBLE, M83**

**ABS 1996 – 2.5M**


ԵԲՐԱՅԱԿԱՆ ԵՒ ՅՈՒՆԱԿԱՆ ԲՆԱԳԻՐՆԵՐԷ ԹԱՐԳՄԱՆՈՒԱԾ




ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆ ԵԿԵՂԵՑԻՈՅ
150-ԱՄԵԱԿԻ
ՅՈԲԵԼԻՆԱԿԱՆ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ
1846 - 1996

Armenian Missionary Association of America
31 West Century Rd.
Paramus, New Jersey 07652
United States of America